Айриванкъ или Гегардаданъ,
Маггуни сочиненіе.
Вагаршапатъ 1871 in 32°

цѣна 20 к.

# ԱՅՐԻՎԱՆՔ

ԿԱՄ

# ԳԵՂԱՐԴԱՅ ՎԱՆՔ



ԳՐԵԱՑ ՄԱՆԿՈՒՆԻ



ՌՅԻ — 1871

Ի ՏՊԱՐԱՆԻ Ս. ԿԱԹՈՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ.

ՀՐԱՄԱՆԱՒ
Տ. Տ. ԳԷՈՐԳԵԱՅ Դ.
ՎԵՀԱՓ. ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Յամին Փրկչական 1868 և Հայոց ՌՅԺԷ, յորում գտանէր Վեհ. Կաթողիկոսն ամենայն Հայոց Տ. Տ. Գէորգ Դ., յօդափոխութեան ի մենաստանին Գեղարդայ, յամսեանն Յուլիսի, անձամբ անձին տեսեալ և զննեալ գրեցի զտեղագրութիւն նորին հանդերձ արձանագրութեամբքն, զոր ահաւասիկ ըստ խնդրոյ ոմանց բարեպաշտից թողում ընծայել ի լոյս։

Գուգնոքեալս այս աշխատութիւն իմ յաշխարհիկ բարբառ կրէ զառաւելութիւնըս ինչ քան զգրեալն ի Ստորագրութեան երից գաւառացն Արարատայ, արարեալ յԵպիսկոպոսէն Շահխաթունեանց։

Եթէ լիցի սա հաճելի յաչս բարեպաշտ մերազնէից ի հոգևոր մխիթարութիւն և ի զբօսանս՝ յաղագս սխրագործութեանց երանելեաց մերոց նախնեաց, շա՛տ է ինձ

համարել զայն փոխարէն չնչին վաստակո-ցս. որով միանգամայն հայրագութ որդիք սիրելի Հայրենեաց մերոց Հայաստանի՝ նկրտեսցին նմանել նոյն բանիւք և ար-դեամբք։

Ո՛չ աւելորդ վարկանիմ յաւելուլ խա-մին զստորագրութիւնս Ս. Ստեփանոսին Ադջոց, Ամենափրկչին։ Հայոց Թատրոյ և գլխաւորագելոյ վանօրէից, և զՆերկրդեցոյն Տիրանուորի Աւանայ, որոց առաջին եր-կոցունցն շրջագայեցի յայցելութիւն ար-բայի և աշխարհ աւերակայ՝ ընկերակցու-թեամբ Յովակիմ Մարկուաղին Պատա-լեանց Օշականեցւոյ։

Մ՛անկոանէ

ՈՒՑԻ Վարդէ Ժ.

22 Մայիս 1874 ամ

# ԱՅՐԻՎԱՆՔ

ԿԱՄ

# Գեղարդայ վանք



*Հայաստանի հնագոյն և երևելի վանքերէն մէկն է Այրիվանք կամ Այրից վանք՝ այժմ Գեղարդայ վանք կոչեցեալ։*

*Հանդերձ ճարտարագործ միանգամայն զարմանալի փորուածքներով ժայռից մէջ՝ ունի մենաստանս արժանի ուշադրութեան պատմական կարևոր անցքեր և կը պարունակէ հնաքրքրական արձանագրութիւնք՝ զորս ուշադրութեան հետ արժան կը համարիմ հաղորդել ցանկացողաց։*

Աւանդական է, զի մեր երկրորդ Լուսաւորիչ Ս. Գրիգոր Պարթեւի օրհնով շինուած է այս վանք, և դուցէ Տրդատ թագաւոր կառուցանել տուած լինի զայս՝ հոգւոյ փրկութեան անձկանօք ի խորշս վիմաց և ի լերինս առանձնասէր կեանք վարելու եռանդ ունեցող ճգնաւորաց համար, որ շատ յարմարութիւնք և դիւրութիւնք կը պարունակէ տեղը։

Գուցէ զառաջինն՝ մի այրի մէջ փոքրիկ եկեղեցի փորուած լինի, ուստի կոչուած է Այրիվանք կամ Այրից վանք։

Ի հնուց հետէ, դրեթէ միշտ անուանի՝ բարեհամբաւ և պայծառաշէն եղած է այս վանք. յորում Գրիգոր Լուսաւորիչ — ինչպէս աւանդութիւն է, — Մեծն Ներսէս Հայրապետ, Իսահակ Պարթեւ Հայրապետ, Յովհաննէս Զ. Կաթողիկոս Դրասխանակերտցի, Ստեփան Կաթողիկոս Աղուանից, Գրիգոր Ժ. Կաթողիկոս՝ ինչպէս և ի 1869 թուին Գէորգ Դ. Կաթողիկոս՝ և այլ բարձրաստիճան Եկեղեցականք մերթ

ընդ մերձ սոսա բնակած են, թէ առանձ-
նական կենաց և մշտամռունչ աղօթից
անձկանօք, թէ՛ այցելութեամբք, թէ՛ ողոր-
մութեամբք, և թէ՛ ընծաւորաց ձեռ-
յէն ազատ և առատաձեռն մեծայոյ ազգա-
նաև մեր թագաւորքն և՝ իշխանքն և՝ այլ
շքեղակայ բնակիչք շատ անգամ հինից և
անապատոյն թշնամեաց ասպատակութեան-
ներէն և արտախաղխուղութեաններէն և դե-
րութենէ փախչելով իրենց յամուր բերդս
ապաստանարաններ կը յօրինէին Նոքեանց
այս վանաց բոլորակքը. և արդէն են
այնպիսի այրեր՝ խորշեր և պատսպարան-
ներ, ուր ամենեքին անմերձենալի են թըշ-
նամեաց, և այնպիսի անառիկ դիրքեր ու-
նին, որ ի պաշարման անգամ՝ առատ պա-
շար ունենալ բաւական է՝ պաշարող թըշ-
նամեաց յուսահատութիւն պատճառել և ի
բաց հեռացուցանել զնոսա: Նոցա ամանց
մերայ դիտարաններ ևս եղած են, և ինչպէս
յաւնոդութեանց ցանկացողք էին, որոց մե-
րայ գէթք կարգապահութեամբ ազատե-

լով շուրջանակի կը դիտեն հնաւուր գոր-բերը և ճանապարհները, որպէս զի թէ չնա-մեաց մի խումբ երևելով՝ իսկոյն ձայն տան և բնակիչք հաւաքուին ու պատս-պարուին ի նոսին։

Երբեմն Հայրապետք մեր, և մերթ հա-յկազ իշխանք առանձինն հոգ տա-նէր և խնամք տածած են վանուցս վերայ. որով հետզհետէ այլ և այլ վիմափոր և հիւսուածոյ եկեղեցեաք և մատուռներով պայծառացած է, և այնպէս կարևոր շինութեամբք զարդարուն հանդիսացած։ Թէև մեր Հայրենեաց՝ Հայաստանի բազ-մաղէտ և դառն անցից մասնակցել, զուրկ մնացած չէ, և ոչ սակաւ անգամ աւերա-ցած, բայց և այնպէս միշտ հայրագութ պաշտպաններով կրկին նորոգուած և շքեղացած և երևելի և արդիւնաւոր ուխ-տատեղի եղած է։

Այս մենաստան զառաջինն աւերեցաւ և կողոպտեցաւ Նսր ոստիկանի զօրքերէն յամին 923։

Վերջին աւերումը վերանորոգեցաւ 1834 թուին՝ հրամանաւ Յովհաննէս Ը. Կաթողիկոսին Կարբեցւոյ ի ձեռն Յովհաննէս շուշտակ վարդապետի։

Երբեմն աստ պահուած է Ս. Գեղարդն Փրկչին, ուստի և ի յետին ժամանակս տարին Էջմիածին. անունը փոխուելով՝ Գեղարդայ վանք կոչել սովորութիւն եղած է։

Ըստ ուսումնական մասին՝ Հայ գրականութեան փառք տալոյ և անուանի հանդիսանալոյ արժանի յիշատակք չերևին այս վանուցս անցելոց մէջ՝ ինչպէս դժբաղդաբար և ի ներկայս։ Գուցէ ի հնումն ունեցած լինի մի վարժարան Մ՛իրանից համար, բայց կդժուարանամք՝ կամ լաւ ևս ասելով՝ չեմք կարող գտանել ուսեալ և արդիւնաւոր մի պտուղ յառաջացած՝ բաց ի Այրիվանեցի Մխիթար Վարդապետէն, որ ԺԳ. դարու մէջ ծաղկեցաւ և էր միաբան Այրիվանից, բայց հաստատ չգիտեմք՝ թէ ո՞ւր ու-

տուէն տուաւ։ Վասնորոյ մեր հետազօտութիւնք Եւրոպանից վերայ տեղագրութեամբ միայն ըլլալ բաւականանայ *)։



(*) Այժմ Կաթողիկոսը մի վարժարան կարգեց, որ մերձակայ Գեղէ գեղ քահանայքն եւ աղքատաց որդիք կը կարդան՝ տեղ. եւ գիշեր մնալով անդ. եւ այս տարին նուէրքը կը պատրաստուին, յառաջակայ տարեն մի վարժարան շինել տալոյ համար անդ։

# ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԱՅՐԻՎԱՆԻՑ

### ԵՒ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔՆ.

---

Կատայից գաւառին մէջ մերձ ի սահմանս Գեղարքունեաց՝ իբր մի և կէս ժամ՝ Գառնւոյ հիւսիս. արեւելեան կողմն հեռու՝ Գեղջս անցաւորին լերին արեւմտեան ստորոտը, ինչպէս կերեւի պատկերիս մէջ, Գառնւոյ ձորոյն գլխն ⁝ սկսած անդր, ահագին լերամբք ու բլուրներով շրջապատեալ է Այրիվանքը, որոյ ապառաժին հարաւ. պարագէն իբր 4—6 քայլ իրարմէ զատնելով ի լերանց և ի բլրոց իջանելով և կարկաչելով կը սահի և կանգնի գետակն Գառնւոյ։

Պարիսպը քառակուսի ձեւակերպութիւն ունի. որոյ արեւմտեան կողմը փոքր ինչ ի շեղ որոշած՝ մնատասանիս դէպ ի

մէջ բաշտացած բարձր ու սեպացած մեծ վիմին կից է։ Հիւսիսային որմը վիմու բարձր ապառաժի վերայ հաստատուած է. իսկ միւսներ ցածուն են։ Երկու դուռ ունի վանքս, մեծն ընդ Հարաւ սեպացած վիմին մերձ արեւմտեան կողմն՝ լայն ու խաչազարդ, եւ միւսն անձուկ՝ ի գետակն երանելոյ արեւելեան կողմը։

Արեւելեան պարսպին ի ներքոյ, ինչպէս կերեւի աւերակներին մէջ, կան մառանատուն, սենեակք ծառայից, եւ այլ հարկաւոր իրաց պահարանք. Նոյն պարսպին դէպ ի Հարաւ ծայրէն սկսած՝ Հարաւային պարսպին վերայ՝ Վանահօր եւ միաբանից եւ ուխտաւորաց սենեակք, լուացարան, հացարան, թոնիր, կթարան եւն. Իսկ արեւմտեան պարսպին Հիւսիսային անկիւնէն սկսեալ դէպ ի ներքս են ախոռներ, եւ այլ դարանք։

Եօթն եկեղեցիք կան մենաստանիս մէջ, որ հիւսքանչ յօրինուածովք շինուած են. զորս հասարակօրէն Եօթն Եկեղեցի կոչելու

սովորութիւն եղած է, և միանգամայն 40 մատուռ ու պատարագելոյ խորան ունի։

Ի վանուց ի ներքս մտանելով՝ ընդառաջ կը գայ բոլորովին կոփածոյ քարերով հիւսուած և կառուցուած մեծ եկեղեցին, ուր սովորաբար կը կատարուի ժամերգութիւն, որ և բաժանեալ է ի ժամատուն և ի Տաճար։ Տաճարին առանց սեանց բարձրացած է սրածայր կաթողիկէով։ Չորս անկեանց մէջ կրկնայարկ աւանդատուններ կամ աղօթատուններ կան սիւներով զարդարուած։ Արևելեան անկեանց՝ այսինքն Աւագ խորանին (սեղանին) երկու կողմը գտնուած աւանդատանց վերնատուներուն դռները սեղանոյ վերայ են. իսկ դիմացի՝ այս է՝ արևմտեան դրան երկու կողմանց անկեանց մատուանց վերնայարկաց կը մտանուի ընդ օրմն հիւսուած քարեայ նեղ սանդուղքներով (*).

(*) Յորս ի Հնումն իշխանազունք կամ իշխանուհիք Հայաստանի կաղօթէին. և երբեմն այնպիսի տեղեր յատկապէս շինել կը տային իշխանք

Աւագ խորանի կիսակամարին (ի ներքուստ) հիւսիսային պատին վերայ ինչպէս և ի հարաւայինն կան արձանագրութիւնք։ Հիւսիսայինը՝ տասն կարգ մեծ և փոքր քարերու վերայ՝ տասն և երկու տող փորագրուած է։ Առաջին տողին նայելով՝ իբր կէ մասնաւչափ՝ երկայնութեան եզերքներէն տաշուած է դուրսէ վերանորոգութեան առթիւ, որով՝ նա և շատ տեղեր մաշուած ու անյայտացած լինելով՝ հազիւ հազ և բաղում դժուարութեամբք և ջանիւք կարողացայ ընթեռնուլ սորա պատճէնը։ Իսկ հարաւ-

---

մեր և իշխանուհիք, և ուրիշ ազգի ազգի ընծայաբերութեամբք և կտակներով ուխտ և դաշինք կը կրէին վանօրէից հետ և կը հաստատէին, որպէս զի երեկի և նշանաւոր տաղաւարաց և այլ տօն աւուրց մէջ յատուկ Ս. Պատարագներ և պաշտօնք մատուցանեն վասն փրկութեան հոգւոց իւրեանց կենդանեաց և ննջեցելոց։ Այսպիսի մատուռներ և արձանագրութիւններ Հայաստանի մի քանի անուանի վանօրէից ինչպէս Հառիճայ՝ Յովհաննավանից եւն. մէջ կան։

ւայինը հինգ տող՝ բայց բաւական դիւրըն-
թեռնլի էր, թէև ի միջոյ պակաս ունէր, որ ևս գուցէ կարուած լինի ի վերանորո-գութեանն։

Ահաւասիկ հիւսիսայինը։

,,Շնորհիւն Աստուծոյ ես Գուռշ իշ-
,,խան(՝) որդի Վ՝ասակայ յազգէ Խաղբա-
,,կայ(՝) գանձայգին արարի ի տերանց աշ-
,,խարհիս սուրբ ուխտս Այրի վանս յե-
,,րամբ և դաշտաւ և ամենայն կարգու-
,,թեամբ որ կայր ի սմա և .... անխա-
,,փտոյ ուխէ և արծաթ ի խաչ և պարհա-
,,րանի լիկ .... ուռկակը և քշոցս(,) և
,,շինեցի եկեղեցիս(,) և կանգնեցի սուրբ
,,նշանացս .... ի գերեզմանացատանն
,,ինձ և ազգի իմոյ յաւիտեան(.) և ետու
,,ի սպասաւորութիւն սրբոյս ... ի հա
,,յոց Գ.անձայգին գեղն(,) զԱղջաբերդ(,)
,,զԱնբերդաղն և ծ.Ո. այլ։ Այլ եթէ որ
,,յիմ յազգէ կամ յաւտարաց զիմ սա-
,,հմանս գնած հայրենիքս ի այս սրբոցս հա-

„նել Ջանոյ զինչ և իցէ պատճառ . . . . .
„զիմ անդարձ տոյլցողք արձանի հանել
„ղեցի(,) այնպիսիս . . . Յասուծոյ . . . .
„րդութեանն . . . . . . . . . Խ . . . ի տա-
„ըին անխափան կ. տարի . . . պարտի
„Գրո . . . . „*):

Զարուայինն է:

«Ողորմութ Յասուծոյ ես Ջասան որդի
„Վ հայթանկայ թոռն մեծի Սմբատայ թա-
„գաւորազին միաբանեցաք ամբը ուխտիս
„և ետու պատուական Յետարան . . .
„և տաճնակա(,) և պատուեցաք սուրբ ուխտս
„տացան ի տարուոջն Ճ. ու ր պատարագ
„Օշականին, Ե ինձ, Գ. իմ մաւրն Կանա-
„յին, Բ. Ռուզուքանայ կենակցի իմոյ(․)

(*) Այս արձանագրութեան ներքև մի կարգ շարուած հինգ կտոր քարից վերայ կրկին արձանագրութիւն կը նշմարուէր, որոյ թէպէտ սկզբնաւորութեան մի՛ քանի բառեր կը գրուէին, բայց շատերը այնքան մաշուած և քերուած էին բոլորովին, զի անհնար եղաւ վերծանել:

,,որ խափանէ (,) ՅԺԲ. Հայրապետաց
,,նզովեա . . . ։,,

Արտաքուստ հարաւային պատին՝ վերայ հարաւային դրան կամարին արեւմտեան կողմը արձանագրուած է հետեւեալը ինն թիզ երկայնութեամբ և երկու և կէս լայնութեամբ՝ գրեթէ հինգ տողով ։

,,Ի թագաւորոյն և աշխարհակալ Աթա-
,,բակ և Իւանէի և արեան հարազատի
,,իւրոյ տիեզերակալին Զ.ա . . . աք Սարգ-
,,սի ամիր սպասալարին և որդւոյ Նորին
,,Աւագին և Շահնշահի (.) որ էառ ի
,,Կայենոյ և Կայծանոյ մինչ ի . . .
,,ի յԱնկանայ և մինչ ի Գաւձուան և ան-
,,տի մինչ ի Կամսաւիան . . յ . . աւգ-
,,նութեամբն (.) և ապա եկի ի սուրբ
,,ուխտս ի յԱյ . . . եկեղեցիքս և զսուրբ
,,քրս (.) և անուշ թուեցաւ յիմ անուն
,,արարի զիմ յիշատակս վերագրեցի և
,,եա . . Ներգ . . ադն . սուրբ Կաթողի-
,,կէխս լուսաւ... ր հակառակի
,,յիս (,) սնեալ ... յերից սուրբ







„ժողովոյն նզովեալ . . . . ՅԼՅ. ա-
„մէն *):„

Նոյն դրան կամարին ձախին պատշաճ ծաղկեայ շրջանակին վրայի պատուհանին գլուխը գտնուած քարին վրայ քանդակուած է մի առիւծ, որ մի ցուլի վերայ ելած է և կրծու թէ գլխի կողմէն կամի պատառել զայն:

Դրան վերայ արձանագրեալ է, որ բաւական գժուարութեամբ հետևեալը հազիւ քաղուած է, թէև կրկին ոչ առանց սխալանաց, և ի տեղիս տեղիս բառերը անհասկանալի են:

„Կամաւն Քրիստոսի ես Մոլիորդ Թա-
„ղայից զգէշինթղինի աղբէն Թփխիսու և
„Նորոգեցի զԿաթողիկէս յիշատակ ինձ և
„Թաղային երկ Սալթանին և ամուսնին

(*) Այս արձանագրութեան քարերը կերևի թէ վերանորոգութեան ատենները խառնուած են, որ չորս տողից ի վերջաւորութեան տառեր կը պակասին. Նաև մէջէմէջ մի քանիքը անվերծանելի կը գտնուէին.

,,իմոյ Գուարէջանէն և որդւոյն իմոյ Ստեփա-
,,նոսէն եղբարցն իմոց Զալէն և Զաւրա-
,,պին ամուսնուն իմոյ զինագներոց Թա-
,,դային և հանգուցելոյն ի Քրիստոս Գա-
,,պին նուիթէկն Թղ սուրբ Գեղարդն (,) և
,,եաու գլխարձ նորհնապզվա։ ,,

,,Թվ. ՈՃ՛Դ պահեսն։,,

Այս ներքև՝ կամարին կլորութեամբ քանդակուած է։

''Կամաւն Աստուծոյ ես Տիթորս միա-
,,բանեցայ սուրբ ուխտիս(.) եաու Ճ. Գ.Հ.
,,խոստացան Ն աւր ժամ։

Վերոյիշեալ պատուհանին ներքև վերջին վերանորոգութեան թուականը կայ Միքայէլ վարդապետի անուամբ, որ բաւական արդիւնաւոր եղած է այս վանուցս համար ըստ նիւթականին։

''Շնորհիւ ամենազօրին Աստուծոյ եր-
,,րորդ անգամ նորոգեցան տանիքն Այրի
,,վանիցս սուրբ Գեղարդայ հանդերձ երկո-
,,քումբ գմբէթիւք, տուք Լուսաւորչեան
,,Հայոց ժողովրդականաց և բազմաջան

,,աշխատութեամբ Վ՝անահորին Միքայէլ
,,վարդապետի Զարուեանց Տփխիսեցւոյ.
,,որև գնեաց յօգուտ վանից . . . .
,, . . . . զԳ-ոզա գիւղն ընդ միոյ ջար-
,,զացի։ Ի թւ. ՌՅԴ. յամի Տեառն
,,1855։,,

Դրսի ժամատուն կամ գաւիթ աւելի ընդարձակագոյն է՝ միաստանի հսկայաձև և թանձր վերնախարսխօք զարդարուած և չորս սիւներու վերայ կառուցուած. որոց վերայ բարձրացած է քառակուսի կաթուղիկէ, յորում միայն է մի մեծ լուսամուտ՝ շուջանակի խորշխորշեայ փորուածներով քանդակագործուած։ Սեանց վերայ ութն կամար ձգուած է, որք կը տրոհեն ութն կամարաժիններու։

Ի տաճարին մտանելոյ դրան աստի և անտի կանգնած են երկու մեծամեծ խաչքարեր ընդ որմն ի վեր՝ պատուանդաններով խարսխուած, որոց միոյն՝ Հարաւայնոյն երկայնութիւնը տասն թզաչափ, ու լայնութիւնը հինգ ու կէս, և ի գագաթն՝

Փրկչական մի քանի պատկերներ կընշմարուին հազիւ հազ, և ներքևը արձանագրուած է ''Ա Կ Ի. Թ. Աստուած ողորմի ես Տիմոթէին և Մխիթարայ յաւըլինողն խաչիս:,,

Իսկ հիւսիսային խաչքարի վերայ փորագրուած է ''Թվ. Գ,,: Այս խաչքարից խիստ ճարտար արուեստագործ քանդակութիւնը կզմայլեցնէ զտեսողս. նոյնպէս և համօրէն եկեղեցին գրեթէ քանդակագործուած է խիտ ու հոծ գրուագներով ու արձանագրութեամբք, և թէպէտ մանրամասն նկատելով՝ զուգապատշաճ և հաւասար միմեանց չ'երևին, բայց և այնպէս՝ ճարտարապետութեան գեղանի օրինակ կը հանդիսանայ աստ: Այն գաւթէս ի տաճարն մտանելոյ դրան երկու կողմանց՝ այս է՝ արևելեան անկեանց մէջ կան կրկնայարկ մատուռներ, որոց հարաւային վերնայարկ մատռան դրան վերայ փորագրուած է,

''. . . իէ

,,ի յանուն յիշատակ սուրբ Թաթէոս
,,առաք . . Լ խորանիս (,) յիշատակ
,,Կիրակոսի Հաւր Գուլթի և վ . .
,,իւր։,,

Եկեղեցւոյս շինութիւնը եղած է 1214 (ՈԿԳ) Փրկչ. թուին, որոյ յիշատակագրութեան արձան՝ քարահիւս տաճարին արեւմտեան մեծ դրան (ի մէջ դաւթին) շրջանական կամարաձև քարին վերայ՝ նոյն ձևով՝ երկու և կէս տողով փորագրուած է այսպէս։

,,Ի ժամանակս թագաւորազնոյն Զա-
,,քարիայի և Իւանէի նորին հարազատի
,,և որդւոց նոցին Շահանշահի և Աւա-
,,գին (,) և յառաջնորդութեան Մարողի
,,միայնաւորին և աշխատութեամբ եղբար-
,,ցըս շինեցաւ Կաթուղիկէս մեծափառ։
,,ՈԿԳ։,,

Եկեղեցւոյս հիւսիսային որմն կոկեալ միապաղաղ վէմ է՝ առապարին երեսը, որ կրկին անգամ բարձր է քան զեկեղեցին. երկանաքարի նման է վէմը, որոյ մէջ կը-

տրուած ու փորուած են չորս վիմափոր եկեղեցիք, որոց երեքը որմնակից է եկեղեցւոյն և գրեթէ հաւասար յատակով. իսկ չորրորդը սոցա վերայ առաւել ընդարձակ և քառակուսի դիրքով:

Առաջնոյն մուտքը գաւթին արեւելեան հիւսիսային անկեան կից է, և հաւասարապէս ի լայնութիւն և յերկայնութիւն ութն ոտք է, կամ քառասուն քառակուսի դազ Պարսից: Զեղունը գմբէթաւ որ բարձրացած է, և հարաւային կողմէն բոլորշի լուսամուտ ունի: Յատակէն քսան ոտք բարձր է: Բեմը, սեղանը և խորհրդանոցը միևնոյն վիմէն գործուած է անբաժան: Այս եկեղեցւոյ հիւսիսակողմը մի խորշ կայ ութն ոտնաչափ դիրքով, կրկին կամարով զատուած, յորում կան գերեզմաններ և հազիւ հազ կընշմարուին երբեմն արձանագրութիւնք գանուելը: Աղբերց հիւսիսային դասէն կելնէ սեւորակ և անախորժ ջուր, որ եկեղեցւոյս և գաւթին յատակին ներքեւէն կանցնի և ի գետակն

կըթափի։ Հիւսիսային որմին վերայ՝ կամարաց ներքև՝ քանդակեալ փորուած է վիթխարի գլուխ եզին՝ ունելով մանեակ ի բերան, յորմէ արձակուած շղթաներով կապուած կան երկու առիւծ դէմ առ դէմ, և մի արծիւ թևատարած կըսաւառնի սոցա վերայ՝ որ մագլովք ու կտցով մի գառըն բռնած ունի։ Այս պատկերին գուշակութեան վերայ մի ծանօթութիւն գտանել դժուար է։ Զայս եկեղեցիս փորել տուած է Պռոշ իշխանը, որոյ յիշատակագրութիւնն ինչպէս և շինութեան եկեղեցւոյս՝ Հարաւային որմին վերայ՝ ութն և կէս տողով պարզ փորագրուած է։

,,Ի Տէրութեան բարեպաշտ Աստուածա-
,,սէր թագաւորին Վրաց Աւագին և Շահն-
,,շահի և որդւոյ նորա Զաքարիայի ես Պը-
,,ռոշ որդի Վասակայ յազգէն Խաղբակայ
,,գանձագին արարի ի տէրանց աշխարհիս
,,զմեծահռչակն Այրիվանս լերամբ և դաշ-
,,տաւ և ամենայն կազմութեամբ որ կայր
,,ի սմա (.) փորեցի ի վիմէ տուն Աստու-

,,Ծոյ յիշատակ ինձ և որդւոց իմոց և ա-
,,մուսին իմ Խութլու խաթունին էմ հուքն
,,զամէն տէր է դասուն սուրբ Գեղարդէն
,,վանիմ *) ։ ,,

Այս տաճարի կից արևելեան կողմն մի-մեանց մէջ փորուած մի և նոյն վիմէ՝ գեղեցիկ երկու եկեղեցի կայ, ներքինն խաչաձև. և վերոյիշեալ եկեղեցւոյ նման՝ բեմերն՝ տապանաներն՝ սեղաններն և խորհրդանոցներն բոլորովին մի և նոյն միապաղաղ վիմէն քանդակագործուած են։ Սոցա դուները քարաշէն դաւթին հիւսիսային կողմէն հանդէպ արև. հիւս. սեան։ Սոցա մէջ չըկայ ոչինչ արձանագրութիւն կամ յիշատակարան, ուստի և չէ յայտ՝ յորոց շինեալ են և թէ երբ։ Կարծիք կայ՝ զի այս երկու եկեղեցիները ի հնուց շինուած լինին, և սոցա անուամբ մենաստանս կոչուած լինի Այրիվանք։ Թէև առաւել

(*) Նօտրով նշանակածներս այլ տեսակ գրով և զուգէ եղքէն գրված լինի.

հնագոյն վիմափոր մատուռ կը նշմարուի վանուցս մէջ, բայց զայսպիսի աւելի ծրդ-նարան կարծել հաւանական պէտք է լինի:

Չորորդ վիմափոր եկեղեցին՝ որ քան զերիս եկեղեցիս մեծ և գրեթէ նոցա սա-նեաց վերայ է, որոյ դուռը քարաշէն եկե-ղեցւոյ դուրսը՝ մեծ վիմին արևմտեան հա-րաւոյ անկիւնն է, յորմէ հինգ քայլ չափ յառաջանալով կը մտանուի յեկեղեցին: Փորուածքը չորս սիւներու վերայ ներք-նախարսխներով և վերնախարսխներով կամարազարդ և բոլորովին մի և նոյն վիմէ է: Ձեղունը սրածայր գմբեթաւոր փոր-ուած է, և մի լուսամուտ ունի: Դիրքը քառակուսի է. բայց սեղան, բեմ և այլ հարկաւոր տեղեր չունի, և գրեթէ գետինը հաւասար է:

Այս եկեղեցին փորել տուած է Պռոշ իշխանին որդի Պապակ՝ ինքեան և ամուս-նոյն ի յիշատակ. որոյ արձանագրութիւնը հիւս. արև. սեան վերնախարսխէն սկըս-եալ՝ կլորութեամբ փորուած է այսօրինակ:

,,Օգնականութեամբն Աստուծոյ ես
,,Պապաքս որդի Պռաւշոյ և ամուսին իմ
,,Ռուզուքան փորեցաք զժամատունս
,,յինքնաբուն*) վիմէ յիշատակ հոգոց մե-
,,րոց և զաւակ մեզ անմահ ի հայալ
,,արդեանց մերոց և եղև առաջնորդու-
,,թեամբ Տէր Մ՝արգարի**) թիվ. ՉԼԷ
(1288),,։

Այն եկեղեցւոյ հարաւ. արևել. սեան վերայ հնագոյն ձևերով և փակագրովք փորեալ է հետևեալ ոտանաւոր արձանագրութիւնը առանց թուականի։

,,Սուրբ նշան Տէրունական(՝)
,,Ախմուռն Վ. գլին (դուցէ Լոռոտապէ-
,,տէն) լեր պահապան
,,Հոգւոյ նորա պատսպարան
,,Եւ անցանողն քաւարան(.)
,,Որ ես պարգևս անանցական

(*) Ի Մատրագ. երից. գաւ. Արարատայ. Հաշկ. յինքնաքար գրուած է։

(**) Անոյ Գրեգորէ.

,,Եկեղեցոյս սուրբ Գէորգեան (ԳԷ-
ՂԱՐՔՈՒՆ)
,,զՆամաւուրքս Հրաշագան
,,Զարդարեալ բանիւ Աստուածա-
կան
,,ԻՃԷԲ յիշատակ անջնջական
,,Նու բխ( գուցէ՝ ՃԱՌԸՆՏԻՐ) միշտ յա-
ւիտեան(.)
,,Պայծառութիւն տաւնից լըման(,)
,,Բոլոր ամաց հանդիսարան(,)
,,Զոր ստացաւ բազում բաղձմամբ
,,Ի զուարճութիւն նորոգ մանկանց
ՃԵՂԵԱՂ ԹՈՒՆՆ է ,, :

Վերոգրեալ վիմափոր եկեղեցւոյ վերայ ի հարաւակողմն՝ մի և նոյն վիմին մէջ փորուած մատուռներ կան, թէ առանձինն և թէ միմեանց մէջ, որոց ոմանց մէջ սեղաններ կան պատարագելոյ աղագաւ, և նոցա միայն ունեցած արձանագրութիւնէն հազիւ կարողացայ քաղել հետեեալ թուական և անունը, որ է ,,ի թըւվին ՉԺԵ։ Գրիգոր ,, ։ Նմանապէս արե-

ւելեան կողմը՝ ի ձորն իջանելու դրան հանդէպ՝ միենոյն վիմէն փորուած միմեանց մէջ մատուռունք կան. որոց միոյն մէջ ի վերայ պատին փորեալ է ,,սուրբ Գրիգոր Հայոցս,,, ներքին հիւս. կողմի մատուռան դրան վերայ գրուած է ‹‹ի Թը. վիս . . Գ,,, մէջտեղի մատուռան հիւս. պատին վերայ՝ սեղանին կից՝ ‹‹ամենասուրբ Երրորդութիւն,, քանդակուած է։

Վանուցս արեւմտեան կողմը՝ արտաքուստ՝ պարսպին կից՝ մենաստանին վերայ բարձրացած սեպացեալ մեծ վիմին գրկին մէջ՝ նոյն վիմէն անբաժան հիմն ունենալով՝ մի այլ բլրաձեւ վիմակտոր կայ, որ կրկին յարկերով բոլորովին փորուած է, միայն երեսն քարահիւս զարդարեալ է։ Այս երկյարկ փորուածքը կրկին բաժանուած է մատուռներու, եւ ունին վէմքարեր, սուրբ խորհրդոյ սեղաններ եւ խորհրդանոցներ՝ առանձնութեամբ կրօնաւորաց պատարագելոյ համար։ Այս մատուռանց իւրաքանչիւրոց մէջ հանդերձ պատարագչօք հազիւ

չորս չորս հողի կըպարունակութին: Վ. եր-
նայարկ մատրանց հարաւ. արեւելեանին
մէջ հարաւ. հիւսուածոյ պատին պատու-
հանին վերայ հետեւեալ թուականը կայ.
„ի թուին. ՉԽԶ. նորոգեցաւ սուրբ Ա-
տուածածինս:,,

Այսոցիկ մատրանց արեւմտեան երեսին
տաշուած և հիւսուած քարից վերայ ոչ
սակաւ արձանագրութիւնք կան, յորոց
թուական ունեցողները կարեւոր համարե-
ցի օրինակել:

Նոյն երեսին հարաւային եզերքին մօտ,
կամ շարժական սանդղովք ելանելու և ներս
մտանելու դրան հարաւային կողմը փոքրիկ
պատուհանին ներքեւով հետեւեալը արձա-
նագրուած է կարճ և երկայն տողերով:

„Ի թուին ՉԶ: Ես Զաքարեան ել
„սուրբ Աստուածածնիս, նորոգեցի զԱս-
„տուածածինս ի հալալ արդեանց իմոց և
„գնեցի զՊէմարիին հողն Ի դահեկան. և
„զերուղահոյքերն Արթզոյի Խասանայ Խ դա-
„հեկան (.) և ետու ընծայք սուրբ Ա-

„աստուածածնին, և սպասաւորք խոստա-
„ցան Ի. ժամ. . . . Ն. ինձ Մամքանայ.
„ով ոք գայս հայրենիքս այս եկեղեցոյս
„հանցէ, ՅԺԸ. Հայրապետաց նզովես-
„ցի . . . „։

Նոյն դրան հիւսիսային կողմն։

„Ի թվ. ՈԻՉ. ես Ստեփաննոս Կուր-
„կես . . ցետու զիմ հայրենի հողն զԲա-
„րայ փաւղոց ետու ի սուրբ ուխտս յա-
„ռաջնորդութեան Տէր Գրիգորոյ։ Գ.
„աւր ժամ ի տարոջն Ստեփաննոսի (.)
„որև խառնեցաւ ի Մ՝ողբէապրոյն մեծաւ
„պշտաստութեամբ։ Ի. աւր ժամ Սարեմ-
„արոյ զաւրն (՝) հաւրն ու զաւր մաւրն,
„և Ի. աւր Սիրլիբախտին....։„

Սորա ներքև չորս տողով։

„Ի թու. ՌԺԸ. Քրիստոսասէր իշխա-
„նաց իշխանքն Զաքար և Իւանէ վերստին
„դարձոյց զՋուրն Ն. [illegible]։ Եշ. և
„Աւրբաթ ի սուրբ ուխտս (.) զՄ. աւրն որ է
„ուրբաթ . . . և բնակիչք սորա խոստացան
„զՄ. աւգ խորանն զԱստուածածին բովան-

„դակ տարին պատարագել զՔրիստոս
„յանուն նոցա.....:„

Նոյնպէս երեք տողով:

„Ես Ազիզս մնեալ ի տան Խութլու-
„խանընթունին և Պաւլչոյ էտոռ Ի դաշհե-
„կան(.)և սպասաւորքն խոստացան ի տա-
„րին Ա աւր ժամ. որ խափանէ մեղանց
„պարտան է:„

Նմանապէս՝ վեց տողով:

„Ի Թ. ՌԼ: Ես տէր Ստեփաննոս Ա-
„ղուա..ի.... կաթողիկոս եղէ միաբան
„սուրբ ուխտիս Այրից վանաց յաւագ-
„նորդութեան հաւր Գրիգորի և եստու
„զԱնդրէի առաքելոց նշխարն և սուրբ
„Նշան Ծննդոց Յոհան. և բնակիչք տե-
„ղոյս խոստացան ինձ ղտաւն փոխման Տի-
„րամաւրն. Գ... աւուրն յամենայն եկե-
„ղեցիս պատարագել զՔրիստոս..:„

Նոյն մատուռնս սուրբայարկ վիմին ար-
տաքուստ երեսի վերայ քանդակագործ-
ուած տասնէն աւելի խաչեր կան. յորոց ե-
րեք հատին վերայ խիստ մաշուած և գրեթէ

գժուարանշմարելի արձանագրութիւնք կային, որոց միայն հազիւ թուականը և մի քանի բառերը կարողացայ ընթեռնուլ։

‘‘ՅՃԻԴ թվակ

‘‘ռա յ ոց

Անցնեցաւ սուրբ նշանս ի բարեխաւսութիւն . . . . . . . . .

. . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . „

Վերոյիշեալ մատուռներէն մի քանի քայլ դէպ յարեւմուտս հեռու վեմափոր մեծ այր կայ, երեսը բոլորովին բաց, որ վառանդաւոր դիրք բռնած է, յորմէ արդէն մի մեծ կտոր փրթած անկեալ է ստորեւ։

Աստ այլ եւ վեմափոր և գետնափոր այրեր *) յորս են մատուռներ, որք երբեմն

(*) Ի սոցանէ միոյն մէջ՝ որ քառորդ վերստի չափ հեռաւորութեամբ դէպ յարեւմուտս՝ ի վանս գնացող ճանապարհին ձախակողմը ժայռի ներքեւ է, մի քանի տարի առաջ մերազնեայ մանկունք ոմանք խաղացած միջոցին՝ միւնոյն միամտութեամբ նոյն

տապատակող հրոսակներէն և ազգի ազգի թշնամեաց արիւնարբու ճիրաններէն զերծանելոյ աղագաւ՝ շրջակայ Ղայկայն բընակչաց և վանականաց և այլոց ապաստանարաններ եղած են, որոց բազումք ար-

---

ժայռի ներքև գտնուած փոքրիկ ծակէն ի ներքս կմտանէ, և ահա կտեսնէ մի քանի բաներ. անմիջապէս իմաց կը տայ վանահօր Միքայէլ Վ. Սարգսապետին Զամճյեանց. որոյ հետ կըփութան անդր, և սակաւ մինչ ևս փորելով կգտանեն մի հատ երկաթ վարագուրի, որ այժմ՝ գրուած է հիւսուածոյ եկեղեցւոյ խորանին վերայ և երկու հատ զանգակ՝ մին՝ որ միւսէն գոյզն ինչ մեծ է, հետևեալ արձանագրութիւն ունի. ,,Յիշատակ է զանգակս Խօճայ ,,Նուրվերտու որդի Աւետիքին — սուրբ Գեղար- ,,դայ. Թվ. ՌՃԺ ,,. Սորա վերայ կան նաև փորագրուած պատկերներ՝ 1) Խաչելութեան Քրիստոսի, 2) Աստուածածնայ Յիսուս Որդի ի գիրկն՝ ափից վերայ կանգնած, 3) Ս. Գայիանեայ և 4) օրհնելոյն Քրիստոսի զմանկունս: Իսկ միւս զանգակին վերայ գրեալ է, ,,Յիշատակ է Գեարոնեցի Առաքելի որդի Գրիգորին ի դուռն սուրբ Գեղարդին. Թվ. ՌՃԽԸին,,.

դարև անառիկ բերդեր և անմատչելի ամրոցներ կը ձևանան ցարդ։

Ի շրջակայս երրեմն բաւական գիւղեր և բնակիչներ գտնուած են։ Այժմ սակաւ գիւղօրայք *) կան, իսկ գտնուածներէն շատերուն մէջ ևս Թուրքեր և Պարսիկներ և Քրտեր կը բնակին ինչպէս ի Հայոց—Թառ գիւղն, յԱղջարերդն և յայլսն։

Ըստ արժան է յաւելուլ, զի Գեղար-

---

(*) Ցորոց չորս գիւղօրայքն Գողթ, Մէհրապ, Քուրտքէնտ, և Թէփէ—Պաշ՝ վանքին կալուածքներն են՝ Միքայէլ վարդապետի ջանիւք գնուած։ Առաջինը թէև նախ բոլորը Պարսիկ բնակիչ ունեցած է, բայց այժմ 12 տունը Հայք են և վերև քարափան վերայ կբնակին, և 8 տուն Պարսիկ են, որք ստորև ձորին մէջ կբնակին։ Մի Քահանայ կայ. և ժողովուրդը Գեղարդայ մէջ կը կատարէ իւր հոգևոր պարտաւորութիւնքը։ Երկրորդը՝ 12 տուն Հայ, երրորդը՝ 3 տուն, և չորրորդը 18 տուն Հայ բնակիչք ունին, և ամենուն մի եկեղեցի և մի քահանայ կայ, որ և նոցա մանկանց կարդալ ևս կուսուցանէ։

դայ շրջակայ երկիրը առհասարակ բարեբեր է, այլ երկրագործութիւնը աւելի մշակուած չէ: Վարուցանքը ընդհանրապէս ցորեան և գարի է: Մի քանի տեսակ և այն գոյգնագիւտ պտղատու ծառեր կը գտնուին խաեղիս տեղիս:

Բնակչաց բարոյական և մտաւորական վիճակները ցաւալի դրութեան մէջ են, և բաւական ժամանակի ու անխոնջ աշխատութեանց կարօտ են զայնս բարւոքելոյ համար:

Ե.յլագզի բնակչաց մեծ մասը աւազակաբարոյ և ծոյլ են. կը սիրեն աւելի այլոց աշխատութիւնը վայելել:



## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՄԵՆԱՍՏԱՆ.

### Ի ՀԱՅՈՑ ԹԱՌ.

---

*Երբեմն անուանի և երևելի՝ իսկ բազում ժամանակէ հետէ խոպան աւերակ և տխրատեսիլ Ամենափրկիչ անուանեալ Մենաստանն՝ որ Քաւուց կամ Քայոց—Թառ կոչեցեալ գիւղէն դէպ յարևմուտս մի վերստ և կէսի չափ (կամ սակաւ ինչ աւելի) հեռու է, Գառնւոյ գեղջ հանդէպ՝ Ազատ գետին հարաւային կողմը՝ լեռան ի լանջս՝ առանձին բլրակ ձևացած ի գագաթըն՝ տափարակ՝ գեղեցիկ և բարձր ի դիրս կը գտնուի, զուարճալի և ընդարձակահայեաց տեսարան և բարեխառն օդ ունի։*

Բարձր և ամուր պարիսպներով շըրջանակի պատեալ է բուն Ամենափրկչի Մենաստանը, որոյ մեծ դուռն հարաւ. պարսպին արևելեան անկեան մերձ է։

Ի միջի նոյն պարսպաց՝ երկու աւերակ եկեղեցիք կան միմեանց մօտ և գրեթէ կից։ Հարաւային կողմինը «Գրիգոր Մագիստրոսի ի ՆԿԲ (1013) Հայոց թուականին շինել տուածն է *)։ Իսկ հիւսիսայինը ի ՌՃՀ (1712) Ազգ. թուաբերութեանս Աստուածատուր կաթողիկոսին նորոգ կառուցանել սկսածն է, որ ցաւալթումն հազիւ հասուցանելով՝ Կովկասեան եղուզակների յաճախ և աւերիչ

---

(*) Յայսոսիկ միջոցս շատ վանքեր՝ ոմանք առ ժամանակ ինչ բարձի թողի մնացեալ ի բնակչացն, բազումք խոպան ամայացած և այժմ հետզհետէ շինութեանց թուլանալով՝ յերկիր կ'տապալին, և ի յաւերակսն տատրակք և բուեր բոյն կը կազմեն.

յարձակմունքներէն ստիպեալ՝ կիսակատար մնացեալ է *)։

Գրիգոր Մագիստրոսի շինել տուածն կը բաժանուի ի տաճար և ի գաւիթ. խորանը սակաւ ինչ խոնարհած է։ Երկու կողմը ունի պահարաններ, ինչպէս Աստուածատուր կաթողիկոսի շինել սկսածն ևս ունէր։ Շինութեանց գիրքերէն և այլ ինչ

(*) Կերևի թէ արժանայիշատակ Յովհ. եպիսկոպոսն Շահխաթունեանց ինքն անձամբ ականատես չէ եղած Ամենափրկիչ վանուց, որ Գրիգ. Մագիստրոսի շինած եկեղեցւոյ շինութեանց նշմարանքը չկայ կասէ։ Ի՞նչ են ուրեմն պարսպաց մէջ եղած երկու աւեր եկեղեցիք։ Աստուածատուր կաթողիկոսին շինել տուածն ոչ թէ Մագիստրոսի կառուցածին տեղւոյն վերայ է՝ այլ առ ընթեր, և մինչև անգամ՝ գուցէ զայն ևս կրկին շինել կամեցած է, զի նորա կոփածոյ սև և մոխրագոյն քարից ձևոյ զարկած չէին, ուստի կամեցած է փլատակները մաքրել տալ. իսկ նոր շինուածին կարմրագոյն քարերը բոլորովին նոր կտրուած և բերել տուած է ի մերձակայից։

ինչ նշաններէն կ՚իմացուի՝ զի թէ տաճարը և թէ գաւիթը գմբէթաւոր եղած են, վերջինն նաև հաստ սեանցն վերայ զարդարեալ է, ըստ որում ցարդ կմնան սիւնքըն՝ վերին և ներքին խարիսխքն, որոց մի քանիսը քակեալ և արտաքս ցան և ցիր դրուած են, գուցէ 1712 Փրկ. թուին միջոցները, և մի քանիսը թաղուած կամ խառնուած կմնան փլատակներու մէջ ի գաւիթն ։

Երկու եկեղեցեաց որմունքն ևս կոփածոյ քարերով կառուցեալ են, ինչպէս նաև գմբէթքն եղած են. սոցա վերայ և ոչ մի կարևոր արձանագրութիւն չկարողացայ գտանել բաց ի սեանց՝ վերին և ներքին խարսխաց և մի քանի քարից վերայ եղած աննշան և անթուական յիշատակագրութիւններէ, որովք վանուց պայծառութեան օգնելով փող կամ հող ևլն. տալով, ձրի ծառայութիւնք վարած՝ ի փոխարէնն Ս. պատարագներ մատուցանելոյ սահմանուած աւուրք լինել կ՚իմացուէին.

միմիայն կարեւոր արձանագրութիւն եղած է, զոր երջանկայիշատակ եւ բազմարդիւն Սիմէօն Կաթողիկոսի Ջամբռէն (ինչպէս նաեւ Շահխաթունեանց Եպիսկոպոսի ըՍտորագրութեան մէջ հրատարակեալ է) հանած՝ ստորեւ կ'հաղորդեմ հետաքրքիր ընթերցողաց ։

Այս մենաստանիս համար ի ՈՁԴ (684) Հայ. թուականին հաստատուած է կը գրէ Սիմ. Կաթ. ի Ջամբռն, սակայն ի սկզբանն ինչ անուն ունեցած լինելը, եւ թէ մենաստա՞ն է եղած՝ չէ բացայայտ։ Թէեւ հաւանական կարծիք կայ մենաստան լինելոյն վերայ, ուր առաջին անգամ մի եկեղեցի կառուցանել տուած է Գէորգ իշխանն Գեղայոյ, որոյ հիման նշմարանքն կ'երեւին երկու աւերակ եկեղեցեաց յարեւելակողմն։

Սիմէօն Կաթողիկոսն կը գրէ թէ՝ առաջին Աշոտ իշխանն իւր որդի Սմբատ քաջ Բագրատունւոյ ձեռամբ ստանալով Փրկչ. անձեռագործ պատկերը ի Կ. Պոլսոյ, շինեց

այս վանքը և կոչեց Ս. Ձեռնափրկիչ: Իսկ Հաւխաթունեանց՝ մեր հին պատմագրաց համաձայն կամէ, թէ Կիւրատեան Աշոտ Կարինից իշխանի որդին (Սմբատ) ի Յունաստանէ բերելով այն պատկերը՝ ի Կոզովիա գաւառ ի Գարինս (Քին—Գայագետ) առ հայրն՝ անդ Ս. Ամենափրկիչ անուամբ մի եկեղեցի կանգնեց, և ինչպէս Գ. Վանանդ պատմիչ կը գրէ. «Իւր անունին մէջ»: Այս հաւան եմ և համաձայն Հաւխաթունեանցին: Բայց երեքհարիւրի չափ տարիներքէն զկնի՝ որպիսի և իցէ միջոցներով Գրիգ. Մագիստրոս ի ձեռս բերելով զայս Ս. Ամենափրկիչ անուանեալ պատկերը՝ փոխադրած է յիւր կալուած ի Քաջոյ—Թառ, և նորա արևմտեան սահմանը մերձ ի Գառնի կառուցանելով մի չքնաղ եկեղեցի, անդ զետեղած է զնոյն պատկեր: Ուստի կը հետևի թէ՝ երկու եկեղեցիներ (կամ վանքեր) եղած են ի Քաջատան Ս. Ձեռնափրկիչ անուամբ, որոց առաջինը շինած է Աշոտ իշխանն Կիւրա-

տեան Գաբրիէլից յատորաս, երկրորդը կառուցած է Գրիգոր Մաղխաս. և առաջնոյն Ըջմիածնի*) անուանեալ պատկերը անդր փոխադրած, յորմէ և զանունն առած։ Այժմ երկուքն ևս աւերակ են, և առաջնոյն բոլորակը (Հին—) Պայազիտ քաղաքին գերեզմաննոցն է, և եկեղեցին ցարդ Ամենափրկիչ կը կոչուի ի բնակչացն։ Իսկ պատուական պատկերը կը գըտնուի աստ ի Մայր աթոռս ի սուրբ Էջմիածին, և որ մեր Եկեղեցւոյ փառաւոր և պանծալի հնութիւններէն և նախնեաց յիշատակ և նշխարներէն մին է**)։

---

(*) Սոյն անուամբ վանք այժմ ի Նոր-Ջուղա ևս կայ մերձ ի Սպահան, ինչպէս և յայլ տեղիս ինչ։

(**) Աստ կարևոր է այս պատկերիս վերայ տեղեկութիւն ինչ տալ ընթերցողացս ինչպէս գըրած է Շահխաթունեանց.

Սոյն այս Ամենափրկիչ անուանեալ Յիսուսի ի խաչէն իջման պատկերը Յովհաննէս Աւետարանչի ձեռագործ է ըստ Գրիգոր Մագիստրոսի, և

Գումբ կրկին (վերջին) Ամենափրկչի տեղադրութեան։

Վանուց Հիսխայլին պարսպին գրեթէ կիսէն սկսեալ դէպ ի յարեւմուտս՝ գետա-կին կամ ձորոյն վերայ կը մնան շինու-թիւնք, այսինքն միաբանաց կիսակործան

---

երկար քառանկիւնի անկիւն փայտեայ տախտա-կի վրայ է. 3 թիզ և 4 մատ երկարութիւն ունի, 1 թիզ 7 մատ լայնութիւն. իսկ թանձրութիւնը երկու մատնաչափ է։ Ի գագաթ Խաչին կայ Հայ-րական Աջոյն նշան, և նորա ստորև Յիսուսի արձանակերպ Հոգին՝ բառ առեալ. բանին՝ «Հայր ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ»։ Ղուկ. գլ. ԻԳ. համ. 46. Խաչին երկու կողմը երկու մարդիկ կան, որոց աջակողմեանը՝ Յիսուսի բազուկը խաչէն ազատելով արկեալ է ուսին վերայ, և նո-րա մարմինը ձեռքերով բռնած է. իսկ ձախա-կողմեանը ի ձեռին ագցան բռնած բևեռը կը քա-շէ Յիսուսի ձեռքէն և խաչէն։ Յիսուս և այս նշ-շանակածներս հանդերձ խաչիւն և տախտակին չորեքկուսի եզերքով դրուագեալ փորածոյ են. և միւս մակերեւոյթ տախտակին ամենևին հարթ հատուած է։

սենեակք, և արեւմտեան պարսպին ցկէսն՝ տնանկաստուն, և այլ պիտոյից տեղուանք՝ ինչպէս մեծ գոմնոց, փռատուն եւն։ Պարսպաց արեւմտեան հիւս. անկեան մէջ գտնուած շինուածոց ի վերայ կը նշմարուին վանահօր բնակարանք, և տակաւին կ՚ընդգծուէին երկուց սենեկաց բաժանմունքները, դրանց սեմից և սեանց պատուանդանաց և որմոց տեղերը։

Ի վանս մտանելոյ հարաւ. մեծ դրան արեւել. սեմին կից մի աղբիւր կայ՝ որոյ ջուրըն այժմ ցամաքեալ է. այս ջրոյ ամուր շինուած ճանապարհը լեռան վերայով կ՚երթայ մինչ ցՀայոց—ձոր։ Կ՚երեւի թէ գետնաբուղխ մի աղբիւրէ առնուած է այս ջուրը, որ այժմ անյայտացած է, և ճշդիւ չկարողացայ իմանալ թէ՝ այն ճանապարհին ջուրը ուստի՞ բերեալ է կամ ուր է աղբիւրն.

Վանուցս մէջ ոչինչ կարեւոր յիշատակարան գտանել չկարողացայ բաց յայնմանէն՝ զոր վերև յիշեցի, և որ արդէն

հրատարակեալ է բարեկլիշ Եպս. Շահ-խաթունեանց, զոր և մեք աստէն ի լոյս տալ արժան կը համարիմք։

Թուին ՆԿԲ (1013) ի Թագաւորութեանն Գագկայ և ի Հայրապետութեան Տեառն Սարգսի, ես Գրիգոր Մագիստրոս վերստին շինեցի զեկեղեցիս յիշատակ ինձ և ծնողացն իմոց. նաև ի տերանց աշխարհիս գանձագին արարի զվայրս սորա լերամբն և դաշտամբն և ամենայն կազմութեամբն որ ի սմա (՝) քառադէմբ (՝) չորս անկեամբ յաջամբ և ահեկամբ (,) ի դիմաց և ի թիկանց։ Եւ տուաք յիշատակ անջնջելի արձանագրով և աշխարհական թագաւորի թղթովն և կայսերական կնքովն, հաստատեցաք ձեռագրով և Հայրապետական նամակովն։ Եւ ի նաւակատիս տաճարիս (՝) զոր շինեցաւ, ընծայեցաք զհայրենիս մեր սուրբ եկեղեցւոյս (՝) որ է Հայոց—Թառ, հանգստարան և օթարան անձեռագործ սուրբ պատկերին Յիսուսի Քրիստոսի որ ի փայ-

տին, խնդրելէն Յովհաննու աւետարանչէն, հրամանաւ մօր Տեառն մերոյ սուրբ Աստուածածնի. և նորոգեալ հաստատեցաք վերստին սուրբ ուխտս վերջինս քան զառաջինն. աստ եդաք զվէմն հաւատոյ հիման սուրբ Եկեղեցւոյ *): Գրիգոր Վահրամ Պխտանին:,,

---

(*) Այս Անգլիս բանասիրաց ուշադրութիւնը կը հրաւիրեմ, զի Մագիստրոս և աստ գրելով աստ եդաք զվէմն հաւատոյ հիման սուրբ Եկեղեցւոյ՝ կակնարկէ և կ'իմացնէ Քրիստոսի Ս. Խաչը, ուստի և յոյս կը ցնդին պապականաց ջանքերը և մեկնութիւնքը ի բանն Կեփա ուրբէ Պետրոսէ տո՛ ուր է Հռոմայ եկեղեցին վերահաստատեցեր, ուր եդին զվէմ հաւատոյ հիման սուրբ Եկեղեցւոյ էին: Քանզի Մագիստրոս բարեմաղթելով իւր որդւոյն համար՝ որ քաղաքական աստիճանով ինչ վերապատուեալ և մեծարուած էր ի կայսրէն Կ. Պօլսոյ այս ինքն ի Հռոմայ եկեղեցին, ուր յայնժամ՝ Փրկչ. սուրբ Խաչը նոյն կայսերական մայրաքաղաքին մէջ կը փառաւորուէր և կը պանծայր, սոյն խօսքերը քան զայս աւելի նպատակ և մեկնութիւն ոչինչ պարունակեն՝ մանաւանդ զի իմաստն կերև ի պարզագոյնս:

Այս Ամենափրկչեան վանուցս արե-ւմտեան կողմը հազիւ մի քառորդ վերստ ի բացեայ *) կայ (մենաստանիս) մեր-ձանոց գերեզմանատունն՝ իբր փոքրիկ արածայր բլրակի վերայ յեզերս գետակին, յորում քառակուսի՝ կարմիր և սև կո-փածոյ քարերով շինեալ մի գեղեցիկ ե-կեղեցի ունի, որոյ խոնարհեալ գմբէթին հատուածքն ինչ ցարդ կը մնային: Խորա-նին՝ յերկուս կողմունս կամարակապ պա-հարաններ կան՝ ինչպէս Հայաստանի բո-լոր վանօրէից և եկեղեցեաց մէջ ևս կը գտնուին բաց ի մատուռներէն:

Սորա բոլորտիքն քանի չափ գերեզմա-նաքարեր կը տեսնուին այժմ: Այս Ե-

(*) Ցայսմ՝ միջոցիս ի տեղիս տեղիս վիհեր կամ փոսեր կան, որք ոչ մինչ ցերեկանն հողե-րով լցեալ էին. Սոցա մէջ ցորեան և այլ կա-րեւոր պարէն և պարագայք կը պահէին եղած ի պէտս վանուցս. Այսպիսի վիհեր առհասարակ ամենայն վանօրայք և գիւղօրայք ունէին մինա-ւանդ ի Հայաստան.

կեղեցւոյ մէջ դիւրընթեռնլի շատ արձանագրութիւնք կը գտնուին, բայց ի մի քանիններէն՝ որոնք կոտրատեալ և մաշեալ են՝ ինչպէս արտաքուստ արևմտեան դրան վրայինները,— բայց ոչ ամէնը թիւ ունէին, թող զի կարևորք ևս չէին։ Շատ իղձ կալայ դրան վրայի արձանագրութիւնքը առնուլ, բայց նախ՝ թիւ չունենալով, երկրորդ՝ փող կամ այգի և կամ հող տըւած՝ ի փոխարէնն Պատարագ սահմանեալ լինելը կը յայտնէին, և երրորդ՝ դժուար և խիստ վտանգաւոր էր խարխուլ տեղը, և ի հեռուստ անկարելի էր ընթեռնուլ։

Այս եկեղեցւոյ արևմտ. հարաւային պատին անկեան կից կիսակամար մի մատուռ կայ, որոյ մէջ պատին վերայ գրանուած արձանագրութիւնն ևս աւելորդ համարեցի՝ հետաքրքրական և արձանագրութեան թուական չլինելով։

Գերեզմանատան և Եկեղեցւոյ արձանագրութեանց կարևորները ահաւասիկ կը հաղորդեմք փափագողաց։

Հիւսիսային պատին վերայ. «Կամաւքըն Աստուծոյ ես Գիրք և ամուսին իմ Շաքարս միաբանեցաք Ամենափրկչիս և գնեցաք զՏանծոլան Ջոչիկին որ ՃՁԷ Ս-սպ. և տուաք ի սուրբ ուխտս (.) և սպասաւորք անդեցս խոստացան ի տարոջն Գ. աւր պատարագել զԲ.(երկուս), Բ. աւրն ինձ և Բ. աւրն Շաքարին. . կատարիչքն աւրհնին: ՉԽԲ. Թվ: »

Նոյն եկեղեցւոյ արեւմտեան ճակատին դէպ ի անկիւնը՝ պատին կից մի խաչարձանի պատուանդանի վերայ — որոյ նման և ի հիւս. կողմն այս ինքն արեւմտ. դրան յերկուս կողմանս ևս լինել կը նշմարուի, որոյ խաչաքարին և պատուանդանին չգիտեմ՝ ինչ եղած է, — հետեւեալը արձանագրուած է. «ՈԿ Թվ. 7) Ես Սարգիս անպիտան Քահանայ կանկնեցի զսուրբ նշան Քրիստոսի (ի) բարեխաւսութիւն

(7) Թուականը փորագրեալ է պատուանդանին հիւս. կողմը արեւմտ. անկեան վերայ, իսկ միշա-

ինձ և ծնաւղաց իմոց և շնորհագարդ աշակերտի իմոյ Աշոտայ (.)։ որք երկրպագէք (՚) յիշեցէք զնա . . . ։ »

Նաև եկեղեցւոյ արևմտ. ճակատին հիւս. անկեան դէմ յանդիման մի տապանաքար կայ, որ հետևեալ արձանագրութիւն և թիւն ունի։

«Ի ԹՎ. ՌՂԷ 8)

փոխեցաւ

Մոնկուկ

որն ի Քրիստոս յի-

շեցէք . . . ։ »

Պարսպապատ Ամենափրկչեան վանուց Հարաւ. արևելեան կողմը կոփածոյ քարերով կառուցուած փոքրիկ խուց կիսաւեր մի մատուռ կայ Ս. Կարապետ անուամբ, զոր երախտագէտ երեք աշակերտք

---

տակարանը արևմտեան երեսին ընդ երկայնութիւնն։

(*) Վերջինն դժուարինաց եղած է ինձ ճըշդիւ Ե կամ Է լինել.

կանգնած են իւրեանց քարերարաց վերայ, որք գուցէ վարդապետ կամ կրօնաւոր եղած լինին։ Այս մատուռը հիւս. արեւմտ. անկեան վերայ ունի շինութեան արձանագրութիւն և թուական ամբողջութեամբ։

Սոյն այս մատուռն երկայնութիւնը 23 թիզ, լայնութիւնն 13 1/2 է. արտաքուստ բարձրութիւնը 14 թիզ, իսկ ի ներքուստ կամարին մէջ տեղէն ցգետին 22 1/2 է։

Այս հանգստարան եղած է, բայց թէ այս եւ միաբանից է՝ թէ հասարակաց՝ զհաւաստին դժուարացայ տեղեկանալ։

Ահաւասիկ արձանագրութիւնը։

„Թվ. ՌԿԲ։ Շնորհիւն Աստուծոյ մեք նուաստ աշակերտք Սեթայ և Սիմէոնի Սոսթանէս և Մաթէոս և Գրիգորէս շինեցաք զսուրբ Կարապետս ի վերայ շիրմաց սոցա (.) և Առաջնորդի սուրբ ուխտիս սահմանեցին Բ. Ճրագալոյցն վան հոգոց նոցա և այլ ննջեցելոցն որ յայսմ հանգստարանի։ „

Դեռ չինքած համառօտ Տեղագրութիւնս՝ պատշաճ կ'համարիմ յաւելուլ, զի երբեմն Երևանայ վիճակին Առաջնորդ կը բնակէր այս վանուցս մէջ, որ խիստ պատուաւոր կը համարուէր՝ մինչև անգամ երբ նորա Առաջնորդ կը գայր ի Ս. Էջմիածին, զանգակները կը հնչեցնէին։ Այս վանահայր եղած է Գրիգոր Վ. կայասէրն որդին Մ՝ագխատրոսի։

Այս վանուցս անցքերը շատ են, և Առաջնորդքն բազում նեղութեանց, տառապանաց և յափշտակութեանց հանդիպած ինչպէս յամին 1602 ևլն։

Այժմեան Վեհ. Կաթողիկոս ամենայն Հայոց Տ. Տ. Գէորգ Դ՝ երբ ի 1868 թուականին օդափոխութեան գնացած էր ի Գեղարդ, յատուկ Կոնդակաւ սոյն Ամենափրկչիս աւեր վանքը յանձնեց Գեղարդայ վանահօր Միքայէլ վարդապետին՝ զնա ինքըն կարգելով վանահայր նաև սոյն վանուցս Ամենափրկչի, որպէս զի շէնցնէ զայն ըստ կարելւոյն ազատելով ամայութենէ և

աւերակութիւնէն, և իւր կողմանէ մի փոխվանահայր կարգելով՝ խնամք տանի և հոգայ նորա պէտքերը, փարէ շրջակայ սեպհական հողերը, միանգամայն պայծառացնէ զայն, ուր շատ յարմար է մի հոգև. ուսումնարան հիմնել և ազգօգուտ հանգխացնել:

Բայց նորին Վսեհ. Օծութեան Ս. Հայրապետի Կոնդակը անգործադրելի մնացած է Գ·առնեայ անտառապետի և վանահօր Զամիլեանցի ի մէջ պատահած մի կըռւոյ համար, սակայն երբ և իցէ մտադըրւած է վերանորոգել զայս և պայծառացնել, վասն որոյ և այլ կարևոր միջոցներ անօրինած է Ս. Հայրապետս:

Իցիւ թէ՝ Հառիճոյ վանուց վերայ գըտնուած Եղեգանդրապօլցի բարեսէր ազգայի ներէ ջանիւք Յովսէփ Եւագ. Բահանայի Կոստանեանց կազմուած արդիւնաւոր ընկերութեան նման մի ընկերութիւն կազմէին Երևանայ ազգայինք մեր՝ և զարդարէին սոյն Եմենափրկչի վանքս, ուր և հիմնէին մի հոգևոր ուսումնարան, և վե-

ձակին համար ուսեալ և կրթեալ քա-հանայացուք հաստուցանէին ։ Թէև Ե-րևանայ թեմ. դպրոցն ևս բաւական կարէր լինել, բայց անդուոյն օդ շրջակայ գիւղօրէից մանկանց համար անտանելի է, թողում ուրիշ անյարմարութիւնքը։




